## Քորէայի թնճուկը

Նախագահ Թրումըն խօսք առնելով Քէյ Ուէսթի մամուլի համաժողովին, հերքեց ամերիկեան կարգ մը թերթերու այն գրոյցը, որ իբր թէ կրակի դադարման հրահանգ տրուած է։ Համաձայն նախագահին, «թշնամիին վրայ ի գործ դրուած ճնշումը, լաւագոյն միջոցն է, մղելու զայն որպէս զի արդար զինադադար մը կնքէ իրենց հետ»։

Ուրբաթ օր, արշալոյսին օդը ելած է Ֆիւզանի մէկ զինարանը, որ կը գտնուի հարաւային Քորէայի մէջ։ Պայթումը տեւած է մէկ ժամ. վեց սպանեալ եւ յիսուն վիրաւորներ կան։ Դեռ չէ ճշդուած աղէտին պատճառը։ Ամերիկեան, անգլիական եւ հարաւային Քորէայի ոստիկանութիւնը մասնակցած է ազատարար աշխատանքներուն։

Հիւսիսային Քորէայի կառավարութիւնը կը հերքէ ամերիկեան կառավարութեան այն մեղադրանքը, որուն համաձայն 5800 գերիներ սպանուած են խժդժօրէն իրենց կողմէ։ Պատճէնը յիշեալ հեռագրին, որ «չարակամ եւ զրպարտական» կը համարէ Մ. Նահանգներու 8րդ բանակի հրամանատարութեան վերագրումները, Վիշինսքիի պահանջին վրայ բաժնուեցաւ ՄԱԿի պատուիրակներուն։

Զօր. Ռիճուէյի ընդհ. բանակատեղին կը թուէ իրենց կորուստները, Քորէայի զանազան ճակատներուն վրայ, յետոյ կ'աւելցնէ 20 Նոյեմբեր թուակիր իր զեկոյցով.

« Գալով 10.836 զինուորներուն, որոնք պատերազմի մէջ իբր կորսուածի տեղ անցած են, անոնց համրանքի մասին լրացուցիչ փաստեր չկան, թէեւ բուրջ հետքեր թոյլ կուտան հետեւցնել որ անոնցմէ մեծ թիւ մը, թերեւս չուրջ վեց հազար հոգի, մահացած են խժդժութիւններու զոհ դառնալով »։

---

### ՍԼԱՆՍՔԻԻ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՎԵՐԱԳՐԵՆ ԿՈԹՎԱԼՏԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՆ

Չեխոսլովաքիոյ համայնավար կուսակցութեան ընդհ. քարտուղարին ձերբակալութենէն ի վեր, Փրակայի ձայնասփիւռը կը ջանայ փառաբանել Խ. Միութեան բարեկամութիւնը, որ «է եւ կը մնայ անկիւնաքարը Չեխոսլովաքիոյ միջազգային յարաբերութեանց »։

Ձայնասփիւռը այնուհետեւ կը հաղորդէ երկրակցութիւնը ապահովութեան նախարար Քոփրիճիվայի Պրաթիսլավայի մէջ խօսած ճառին, որ «արթնութիւն կը յանձնարարէ բոլոր այն մարդոց դէմ, որոնք կը փորձեն խանգարել Չեխ եւ Խորհ. Միութեան միջեւ գոյութիւն ունեցող բարեկամութիւնը »։

Չեխոսլովաքիոյ նախկին ճարտարապետական նախարար Լոշման յայտարարած է Վիէննայի « Ընկերվարական Թղթակցութիւն» օրաթերթի աշխատակցին, որ Սլանսքիի դէմ եղած լրտեսութեան եւ դաւադրութեան մեղադրանքը աւելի քան անճշմարտանման է։ Մոսկուայի անձնուէր գործակալն էր ան, Քրեմլինի բացարձակ վստահութիւնը կը վայելէր։ Ինքն է որ 1945ին պնդած է Պենէշի, որ ներքին նախարարին փոխարէն զինքը կոչէ տեղւոյն համայնավար կուսակցութեան ընդհ. քարտուղարութեան ։

«Կոթվալտի խմբակցութեան դիրքը զօրացած է, յարած է նախկին նախարարը, բայց հաւանական է որ ան որոշած ըլլայ ձերբակալել Սլանսքին, առանց Մոսկուայէն հրահանգ ստացած ըլլալու, որպէսզի մշուշոտ վարագոյրի մը տակ ծածկէ Չեխոսլովաքիոյ բանուոր դասակարգին դժգոհութիւնը երկրի իրաւակարգին դէմ »։

Միւս կողմէ, Փարիզի չեխական շրջանակներուն մէջ այն կարծիքը կը տիրէ թէ՝ երբ 1948ին երկրին իրաւակարգը փոխուեցաւ Ռուտոլֆ Սլանսքի չփման մէջ մտաւ այն ատենուան Լեհաստանի համայնավար կուսակցութեան ընդհ. քարտուղար Կոմուլքայի եւ Հանրապետութեան նախագահը Օսուպքա - Մորավսքիի հետ, որոնք ներկայիս բանտը կը գտնուին ։

---

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՕԱ ՊԻՆՀԻ դէմ ձեռնարկուած Վիէթմինհի յարձակողականը զսպուած է Թայի 3րդ վաշտին կողմէ։ Ըմբոստներուն կորուստը եղած է 1000 հոգի ։

ՌՈՒՄԱՆԻՈՅ դեսպանատան քարտուղարուհիներէն Տիկին Կիքա Թինթա, որ էր Ֆրանսի օդանաւով Ժընեւի ճամբով Ռումանիա պիտի երթար երկու պաշտօնատարներու ուղեկցութեամբ, ինքզինքը դրած է Ֆրանսական կառավարութեան պաշտպանութեան տակ։ Ամուսինը իրեն միացած է ։

## Յետաձգուած են

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի խնջոյքը եւ Հ. Մ. Մ.ի զինեձօնը։

Ընկերներ ԼԵՒՈՆ ՇԱՆԹԻ եւ ՌՈՒԲԷՆ ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆԻ սուգին առթիւ ։

## Մեծ հեկոյթ պարահանդէս

Նախաձեռնութեամբ Ց. Կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղի, եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Պոմոնի Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբի։ 8 Դեկտեմբեր, շաբաթ երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս, Պոմոնի դպրոցի սրահին մէջ ։ Կը նախագահէ եւ կը խօսի Տիկ. Ն. ՔԻՊՐԻԹՃԵԱՆ

Գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին։

Նոր Սերունդի կողմէ պիտի ներկայացուին Ա. Ահարոնեանի « Ազատութեան ճանապարհէն մայր»ը եւ զաւեշտ մը Ալէքսանդր Տիմայէն « Ծոյլ կին»ը։ Երգ, մեներգ, խմբերգ, արտասանութիւն եւ զանազան անակնկալներ։

Կէս գիշերէն մինչեւ լոյս հայկական եւ եւրոպական պարեր, ընկերակցութեամբ յայտնի orchestre du «CLUB» Francis Scottի։

Պարերուն կը մասնակցին նաեւ փոքրիկներ՝ Աշրաֆեան, Դարբինեան եւ Գարեգինեան։

Ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով։

## Թատերական ներկայացում

Կազմակերպուած Ս. Մ. վարժարանի նախկին կրտսեր Սանուց կողմէն։

ՈՂԲԵՐԳԱԿԱՆ ԾԱՂՐԱՆՔԸ

(Տռամ երեք արար)

եւ **Le Commissaire est Bon Enfant** (զաւեշտ 1 արար)

Ս. Մուրատեան վարժարանին մէջ, 16 Դեկտեմբերին, կիրակի ժամը 15ին ։

Տոմսերը ապահովել Ս. Մուրատեան վարժարանէն, հեռաձայն OBS. 18-28։ Գիները 200 եւ 250 ֆրանք ։

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԵՑԷՔ « ՍՈՒՐԲ ՓՐԿԻՉ »ԻՆ

Պոլսոյ «Սուրբ Փրկիչ» Ազգ. հիւանդանոցի տեղեկատու ամսաթերթը երեք տարիէ ի վեր կը հրատարակուի եւ անոր շնորհիւ Հիւանդանոցի Հոգաբարձութիւնը կը ջանայ ամուր կապեր հաստատել յարգելի հասարակութեան եւ Ազգին Տան միջեւ։ Վստահ ենք որ ամէն նախանձախնդիր Հայ պիտի փափաքի շահագրգռուիլ մեր նուիրական հաստատութեամբ եւ պիտի փութայ բաժանորդագրուիլ ՍՈՒՐԲ ՓՐԿԻՉ հանդէսին։

Ս. Փրկիչ Ազգ. Հիւանդանոց, Ետի Գուլէ, Պոլիս ։

### ՊԱՏԱՐԱԳ

Պուլվառ Օտոյի եւ շրջակայքի Ս. Յակոբ եկեղեցւոյ Կրօն. վարչութիւնս, պատիւ ունի ծանուցանելու, յարգոյ հայ հասարակութեան թէ՝ այս կիրակի եկեղեցւոյս Նորընծայ Արժ. Տ. Պըսակ քհնյ. Հայրապետեան, իր անդրանիկ պատարագը պիտի մատուցանէ հանդիսաւորապէս, կնքահայրութեամբ Տէր եւ Տիկին Մանուկ Մարտիկեանի ։ Արարողութեանց պիտի մասնակցին քահանայ հայրերը, եւ Պոմոնի եկեղեցւոյ դպրաց դասը, ղեկավարութեամբ Պ. Լեւոն Ճէրահեանի։ Կը հրաւիրուին Մարսիլիոյ հայ հասարակութիւնը։ Ժամերգութիւն 7.30ին, պատարագ 10ին ։




**Le Gérant : A. NERCESSIAN**
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris(13)


## Մեծ պարահանդէս

Մեծ պարահանդէս, նախաձեռնութեամբ Ֆր. Կապոյտ Խաչի Տէսինի մասնաճիւղին, քաղաքապետարանի շքեղ սրահին մէջ, Դեկտեմբեր 8, Շաբաթ երեկոյեան ժամը 8.30էն մինչեւ լոյս։

Երգասպնակներ եւ ձայնասփիւռի արուեստագէտներ Alexandre Bocoze et son ensemble։

Ճոխ պիւֆէ մատչելի գիներով ։

Մուտքը 150 ֆրանք ։

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ի գիտութիւն բարեպաշտ ժողովրդեան, կը ծանուցուի թէ այս կիր. Ալֆորվիլի Ս. Պօղոս - Պետրոս եկեղեցւոյ Նորընծայ Տէր Պարգեւ քհնյ. Մէրճանեան, պիտի մատուցանէ իր անդրանիկ պատարագը, մասնակցութեամբ եկեղեցւոյն քառաձայն երկսեռ երգչախումբին ։

Ռոպեր Շումանի տեսակէտը այն է, որ Ֆրանքեւմարօքեան յարաբերութեանց միջամուխ ըլլալը ոչ միայն անպատեհ, այլ անհաշտ պիտի ըլլայ ՄԱԿի կանոնագրին տրամադրութեանց : Վերջին պահուն 23ի դէմ 28 ձայնով յետաձգուած է հարցին քննութիւնը :

Սուրիոյ պատուիրակ Ֆարէս էլ Խուրի մտադիր է քաղաքական յանձնաժողովին բերել առաջարկ մը, որ կը թելադրէ զինաթափութեան յանձնաժողով մը կազմել, Արեւելքի եւ Արեւմուտքի միջեւ կնճիռները լուծելու համար: Սուրիոյ ներկայացուցիչին զօրավիգ պիտի կանգնին արաբական եւ ասիական երկիրները, բայց կը թուի թէ ամերիկեան պատուիրակ Ճեզըփ խորհուրդ տուած է իրեն ետ կենալ այդ ձեռնարկէն, որովհետեւ անօգուտ կը նկատէ :

Քաղաքական մասնաւոր յանձնաժողովը ձեռք առաւ Գերմանիոյ մէջ ազատ ընտրութիւններ կատարելու կարելիութիւնը, քննիչ յանձնաժողովի մը առաքումով: Իրաքի, Գոլոմպիոյ, Յունաստանի եւ Հոլանտայի պատուիրակները կողմնակից եղան երեք մեծերու որոշման, իսկ Չեխոսլովաքիա հակառակ արտայայտուեցաւ : Հոլանտայի ներկայացուցիչը առաջարկեց յաւելուածական օգնութիւն մը ընծայել Գերմանիոյ, երկու կողմերու միջեւ գտնուած խրամատը գոցելու համար: Բազմաթիւ պատուիրակներ այն կարծիքէն են ,որ գերման երկու պատուիրակութիւնները իրարու հետ ուղղակի բանակցութեան մտնելու են, ազատ ընտրութեամբ Գերմանիոյ միացման ճամբան հարթելու համար:

Ապահովութեան Խորհուրդը որոշում տուաւ, որ յառաջիկայ երեքշաբթի սեղանի վրայ բերուի Իտալիոյ ընտրութեան հարցը իր ծոցէն ներս: Կը կարծուի թէ Խ. Միութիւնը վեթոյի պիտի դիմէ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՌԷՕՅԹԷՐԻ Թղթակից Լէօփոլտ Հերմըն վըտարուած է Թեհրանէն, որովհետեւ հեռագրած է իր գործակալութեան, որ Տոքթ. Մոսատեղ փախաւ խորհրդարանէն ընդդիմադիրներու նախատական կանչերուն տակ :

ՆԱՀԱՍ ՓԱՇԱ երէկ իրիկուն յայտարարեց թէ հրահանգ տրուած է իրենց Լոնտոնի դեսպանին, որ Գահիրէ վերադառնայ, ի նշան բողոքի Սուէզի գօտիին մէջ Անգլիացիներուն կատարած յարձակումներուն: Արտօնութիւն տրուած է նաեւ Եգիպտացիներուն որ զինուին, ներքին նախարարին մասնաւոր թոյլտուութեամբ: Մեծ անակնկալ մը կը նկատուի այս Լոնտոնի մէջ, որովհետեւ մինչեւ վերջին վայրկեանը կը սպասուէր որ Եգիպտոս ետ կենայ իր մտադրութենէն, մանաւանդ որ Իտըն որոշած էր հանդիպում մը ունենալ Սարահէտտին փաշայի հետ :

ՀԱՐԱՒԱՅԻՆ ԱՓՐԻԿԷԻ վարչապետ Տոքթ. Մոլան որոշած է ետ կանչել ՄԱԿի իր պատուիրակ Թ. Տոնկը: Պատճառը այն է, որ խնամակալութեան յանձնաժողովը մտադիր է լսել Հերերօ ցեղին գանգատները, ինչ որ տհաճութիւն պատճառած է Հարաւային Ափրիկէի կառավարութեան :

ԴԱՇՆԱԿԻՑՆԵՐԸ որոշած են փոփոխութիւններ մտցնել իրենց զինաթափութեան ծրագրին մէջ : Այժմ, համաձայն ԵնՎիշինսքիի առաջարկին ,կազմելու մարմին մը, որ պիտի կրէ « հիւլէական ուժի եւ պայմանադրական զէնքերու յանձնաժողով » անունը: Դաշնակիցները համաձայն են նոյնպէս, որ 1952ի Յունիս մէկին ,ան տեղեկագիր մը ներկայացնէ կատարուած յառաջդիմութեանց մասին եւ միջազգային հակակշիռի մարմին մը կազմուի, Ապահովութեան Խորհուրդի շրջանակին մէջ :



### ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ! ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ ! ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ !

Հ. Մ. Ը. Մ. Ի (U. G. A. de Marseille)

Այնքան սպասուած ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԻՆ: Տեղի պիտի ունենայ 22 Դեկտեմբեր 1951 Շաբաթ երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս ,«Club»ի շքեղ սրահին մէջ, Rue Grignan :

Մանրամասնութիւնները մօտ օրէն, առանձին յայտարարութեամբ :

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ



ՓԱՐԻԶԱՀԱՅ Ուսանողական ընդհ. միութիւնը պարանցիկ ցերեկոյթ մը կազմակերպած է այս կիրակի, Maison des Lettresի մէջ (Métro Saint Sulpice կամ Luxembourg), ժամը 15—20:

Կը հրաւիրուին երիտասարդները :

ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ՈՒՍ. ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԻՒՆԸ վերակազմած ըլլալով իր երգչախումբը, կոչ կ'ուղղէ բոլոր հայ երիտասարդ, երիտասարդուհիներուն մասնակցիլ այս ձեռնարկին :

Երգչախումբը կը ղեկավարէ Պ. ՕՀԱՆ ՏՈՒՐԵԱՆ:

Փորձերը տեղի կ'ունենան կիրակի առաւօտեան ժամը ճիշդ 10.30ին Մարի Նուպար Ուս. Տան մէջ: (Métro Porte d'Orléans):

## Աղօթաժողով Պօմոնի մէջ

Պօմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ, ամէն չորեքշաբթի կէս օրէ վերջ, ժամը 2.30ին աղօթաժողով, քարոզ եւ հիւանդներու համար մասնաւոր աղօթք :

Կը հրաւիրուին բոլոր փափաքողները մասնակցելու այս աղօթքներուն :

Union Spirituelle des Dames, Eglise Arménienne Allée des Puits, Beaumont, Marseille:

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղի, Այս կիրակի կէս օրէ վերջ, ժամը 3էն 10ը, Municipalitéի սրահին մէջ, 9 rue du Marché: Կը նախագահէ եւ կը խօսի Պ. ՀԱՅԿ ՍԱՐԳԻՍԵԱՆ :

Գեղարուեստական բաժին.— Երգ, պար, արտասանութիւն, ինչպէս նաեւ հաճելի անակնկալներ Անկէնի դպրոցականներու կողմէ:

Սիրով կը հրաւիրուին Անկէնի եւ շրջակայ հայութիւնը :




**Le Gérant : A. NERCESSIAN**
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris(13)


# ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. Պօմոնի «Զաւարեան» ենթակոմիտէի ժողովը, այս շաբաթ երեկոյ, ժամը 9.15ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն :

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ կեդր. վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ իր Փարիզի եւ շրջակայ բոլոր մասնաճիւղերու ներկայացուցիչները, այս շաբաթ կէս օրէ վերջ ժամը 3.30ին, ընկերուհի Ա. Զիթունիի բնակարանը, 13, rue Caumartin, métro Madeleine կամ Opéra: Օրակարգ՝ Մանուկներու Օրուան տօնակատարութիւնը :

ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուսումնասիրացի ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին, Իսիի Խրիմեան վարժարանը, Rue de la Défense: Օրակարգ վարչութեան համարատուութիւն :

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Պօմոնի Կ. Խ.ի մասնաճիւղը իր «Մանուկներու Օր»ը կը տօնէ 23 Դեկտ. կիրակի կէսօրէ վերջ , եկեղեցւոյ կից սրահին մէջ :

## Հայ Երգի Օրը

Հայ Երգի Օրը Մարսէյլի մէջ Casa d'Italia , rue d'Alger, կիրակի 16 Դեկտեմբեր, ժամը ճիշդ 16ին:

## Առանձին երգչախումբը

Ղեկավարութեամբ Վ. ՍԱՐԳՍԵԱՆի կը ներկայացնէ 9 հայ երգահաններու գործերէն : Բազմաձայն երկսեռ խմբերգներ:

Կը մեներգեն ու կը նուագեն Տիկին Զ. Մօսքեան, Օր. Մ. Սիմոնեան, Տէր եւ Տիկին Գ. Ստեփանեան, Օրիորդներ Փօլ Օբրա եւ Ս. Պօյաճեան:

Գիները խիստ ժողովրդական : Դիմել երգչախումբին :

են եւ յոյսերնին դրած են չէզոք մարմնի մը միջնորդութեան վրայ, ոչ միայն Քորէայի, այլ Ծայրագոյն Արեւելքի բոլոր հարցերը լուծելու համար: Այս ամէնը լայն չափով կախում ունին Փան Մուն Ժոմի բանակցութիւններէն, որոնց արդիւնքը յայտնի պիտի ըլլայ մինչեւ Դեկտ. 27:

## ԴԷՊՔԵՐԸ ԱՐԵՒԵԼՔԻ ՄԷՋ

Յառաջիկայ երկուշաբթի, 24 Դեկտ., պաշտօնապէս պիտի հռչակուի Լիբիոյ անկախութիւնը, որ յետաձգուած էր արքային իսկ կամքով, պարզապէս կարգ մը փոխանցումներու լրացման համար: Լիբիոյ Թագաւորը Իտրիս Էս Սինուսի ջերմ բարեկամ մըն է Անգլիոյ, Լոնտոն իր մօտ դիւանագիտական պատուիրակ նշանակած է Սըր Ալեքսանտր Քըրքպրայտը, որ երկար տարիներ Աման գտնուած է: Ասոր համար, Եգիպտացիները սկսած են աղմկել, պատճառաբանելով որ Մեծն Բրիտանիան Լիբիան նոր Յորդանանի մը պիտի վերածէ:

Զօր. Ռիճուէյ դիմեց Քիմ Իլ Սունկի եւ Փենկ Թէհ Հուայի, որպէսզի թոյլ տան միջազգային կարմիր խաչին այցելելու գերիներու ճամբարները: Ամերիկեան բանակի հրամանատարը խնդրած է միանգամայն, որ իրեն տեղեկութիւններ տրուին հազարեակ մը զինուորներու մասին, որոնց անունները չէին նշանակուած յանձնուած ցանկին մէջ: Նմանապէս դոհացուցիչ բացատրութիւն մը ուզած է հարաւային քորէացի զինուորներու «անհաւատալի համրանք»ի մը կորստեան մասին:

Հնդկաչինի պետական նախարարներէն Ժամ Վան Կիաօ յայտարարած է Փարիզի ճարտարարուեստական ներկայացուցիչներուն թէ՝ Ֆրանսացի զինուորներուն աստիճանական փոխարինումը Վիէթնամի ուժերուն կողմէ, միակ միջոցն է վերջ դնելու տեղական պատերազմին: Նախարարը կը կարծէ թէ՝ այդպէսով Վիէթմինհի ազգայնականները զէնքերնին վար պիտի դնեն եւ պիտի միանան օրինաւոր կառավարութեան:

Անգլիոյ գաղթային նախարար Օլիվըր Լայթելթըն երէկ Լոնտոն վերադարձաւ Սինկափուրէն: Հետը միասին բերած է կարգ մը ծրագիրներ, Մալեզիոյ ըմբոստներուն դէմ աւելի ազդեցիկ պայքար մը մղելու համար: Ըստ Ռէօյթէրի, Նախարարը տեղւոյն իրադարձութեանց մասին խօսելով, հետեւեալը յայտարարած է.— Կացութիւնը հոն անելի մէջ է: Ատիկա կը նշանակէ պատերազմի ծաւալումը: Երկար պիտի տեւէ. շատ կարելի է, որ կացութիւնը բարելաւուելէ առաջ, աւելի ծանրանայ»:

Եունայթըտ Փրէսի համաձայն, դաշնակից երեք պետութիւնները եւ Թուրքիան ճանչցած են Սուրիոյ նորահաստատ կառավարութիւնը: Ցիշեալ կառավարութեանց ներկայացուցիչները այցելած են Գնդ. Ֆէվզի Սելոյի, յայտարարելու համար թէ՝ «Սուրիոյ ներկայ պետութիւնը բնականոն բոլոր պայմանները կը լրացնէ, դիւանագիտական յարաբերութեանց հաստատման համար»:

Թունուզի մէջ ուրբաթ օրուընէ սկսաւ ընդհ. գործադուլը, որ երեք օր պիտի տեւէ: Ժամը 8էն սկսեալ շուկան գոց էր, ոչինչ կարելի էր գտնել, միայն հացագործները բաց էին: Գործադուլին ձեռնարկուած է հին եւ նոր Տեսթուր կուսակցութեանց ու բանուորական սենտիքաներու նախաձեռնութեամբ: Ֆրանսայի ընկերվարական կուսակցութիւնը գոհ չէ կառավարութեան բռնած դիրքէն, այս առթիւ բողոքագիր մը հրատարակած է, որուն մէջ կ'ամբաստանէ զայն թէ գաղթային ծաւալապաշտական քաղաքականութեան մը կը հետեւի, թէ ընդառաջ չէ գացած Թունուզի յուշագրին ընծայած համաձայնութեան կարելիութիւններուն եւ կտրած է կամուրջները: Արտաքին նախարար Ռ. Շուման իր կարգին հերքած է Թունուզի պարպումին զրոյցները եւ մաղթած է որ երկրին բոլոր տարրերուն միջեւ ապահով գործակցութիւն մը հաստատուի:

ՖՐԱՆՍԱՅԻ արտաքին նախարարը նամակ մը ուղղած է Փարիզի իտալական դեսպան Փիէթրօ Քուարոնիի, ուր կ'ըսէ թէ համաձայն դաշնակիցներուն 24 Սեպտեմբերի յայտարարութեան. Ֆրանսական կառավարութիւնը յօժարակամ կ'ընդունի Իտալիոյ դաշնագրին վերաքննութիւնը:

ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ. — Գասապլանքայէն (Մարոք) Տէր եւ Տիկին Գ. Յարութիւնեան եւ իրենց զաւակները Սեպուհ եւ Հայկ, իրենց եղբօր եւ հօրեղբօր Արշակի մահուան վեցերորդ եւ իրենց զաւկին ու քրոջ Ժընեվիէւի հինգերորդ տարեդարձին առթիւ կը նուիրեն հազար ֆրանք, Ֆ. Կ. Խաչին եւ հազար Ֆր. Աղքատախնամին:

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris(13)







ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ՍԷՆԹ ԱՆԻ ԴՊՐՈՑԻ

Սէնթ Անի դպրոցը վերաբացուած է եւ կանոնաւոր դասաւանդութիւնները կը սկսին Յունուար 2ին, չորեքշաբթի երեկոյեան ժամը 8.30ին: Կը դասախօսէ Պ. ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ.— Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ Եկեղեցւոյ մէջ, այս երեքշաբթի օր տեղի պիտի ունենայ Ս. Ստեփաննոսի տօնին առթիւ մասնաւոր Ս. պատարագ, եւ յետ պատարագի ընդունելութիւն պիտի ըլլայ ի պատիւ Դպրաց Դասու, Հոգաբարձութեան կողմէ:

Հոգեհանգիստ պիտի կատարուի Նիկոմիտիոյ բազմավաստակ առաջնորդ Տէր Ստեփաննոս արք. Յովակիմեանի յիշատակին:

Նիկոմիտիոյ եւ շրջաններու հայութիւնը մասնաւորապէս եւ հայ հասարակութիւնը կը հրաւիրուին ներկայ ըլլալ այդ օր յաւերժացնելու համար Ազգասէր առաջնորդին խնկելի յիշատակը:

Դիւան հոգաբարձութեան



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս կիրակի առաւօտ, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

Ս. ՇԱՄՈՆԻ Հ. Յ. Դ. «Վարուժան» ենթակոմիտէի ժողովը այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3ին, սովորական հաւաքատեղին:

ՇԱՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը 29 Դեկտ. շաբաթ երեկոյ, ժամը 9ին, ընկ. Միսաքի բնակարանը:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Շավիլի Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի եւ Նոր Սերունդի ընկեր ընկերուհիները ցաւակցութիւն կը յայտնեն ընկերներ Պաղտասար Քիւլչէեանի եւ Գրիգոր Փափազեանի եւ իրենց պարագաներուն, իրենց մօր եւ մեծ մօր ցաւալի մահուան առթիւ, եւ փոխան ծաղկեպսակի 2000 Ֆր. կը նուիրեն Շավիլի դպրոցին:

Ֆրանսական բանակը կրցած է յաղթանակներ շահիլ, շնորհիւ տեղական ուժերու յաւելման եւ Ամերիկայի նիւթական աջակցութեան: «Կառավարութիւնը զանց պիտի չառնէ որ եւ է ջանք՝ վերահաստատելու համար խաղաղութիւնը : Մինչ այդ, անհրաժեշտ է քուէարկել առաջարկուած վարկերը: Մեր զօրքը վճռած է շարունակել կռիւը մինչեւ վերջնական յաղթանակ: Անոնց կատարած զոհողութիւնները կը ծառայեն ազատ աշխարհի դատին»:

Վիճաբանութեանց ընթացքին, երեսփոխան մը դանդատեցաւ թէ պատերազմին ամբողջ ծանրութիւնը կ'իյնայ Ֆրանսայի վրայ: Նախկին վարչապետ մը, Տալատիէ, առաջարկեց միջազգայնացնել Հնդկաչինի խնդիրը: «Կառավարութիւնը պարտաւոր է ՄԱԿին աջակցութիւնը խնդրել, զինադադար մը կնքելու համար, որպէսզի հանրաքուէ կատարուի եւ ժողովուրդը յայտնէ իր կամքը: Վարչապետը եւ ուրիշ երեսփոխաններ մերժեցին այս առաջարկը: Զօր. Ժուանվիլ (Համայնավար) առաջարկեց 50 միլիառ ֆրանքի վարկ մը բանալ, Հնդկաչինի բանակը ցրուելու եւ հայրենիք վերադարձնելու համար: Այս առաջարկը մերժուեցաւ 101ի դէմ 519 ձայնով :

✕ Ելմտական օրէնքը տուրքերու յաւելման առթիւ կ'առաջարկէ կրկնապատկել տուգանքները, ինչպէս եւ շուներու համար պահանջուած տուրքը, համաձայն քաղաքներու կարեւորութեան (150ի փոխարէն 300, մեծ քաղաքներու մէջ՝ 1600 փոխան 800ի):

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

856 ՀՈԳԻ ՄԵՌԱՆ Մ. Նահանգներու մէջ, Ծնունդի տօներուն առթիւ, 555ը՝ զոհ ինքնաշարժի արկածներու, մնացեալները հրդեհի, ցուրտի եւայլն:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ հիւլէական մասնագէտներէն նշանաւոր երկրաբան մը, դոկ. Ֆետիա Ասորախով, որ կը ծառայէր արեւելեան Գերմանիոյ մէջ. փախած եւ արդէն Ամերիկա հասած է, ինչպէս կը հաղորդեն անգլեւամերիկեան աղբիւրէ: Այս մասնագէտը արեւելեան Գերմանիոյ ուրանիումի հանքերուն մէջ կ'աշխատէր 1947էն ի վեր, ուղղակի Մոսկուայի հսկողութեան տակ: Այս հանքերուն մէջ բռնի աշխատանքի դատապարտուած են 100 հազար գերմաններ, 5800 ռուս մասնագէտներու ղեկավարութեամբ: Հինգ հազար գաղտնի ոստիկաններ (Չեկա) կը պաշտպանեն հանքերը :

4500 ՌԱԶՄԱԿԱՆ օդանաւեր շինուած են Մ. Նահանգներուն մէջ, 1951ի ընթացքին :

ԻՐԱՆԻ «Թուտէհ» կուսակցութիւնը, (համայնավար) որ օրէնքէ դուրս հռչակուած էր 22 ամիս առաջ, գործնապէս կը մասնակցի ընտրական պայքարին եւ հինգ թեկնածուներ նշանակած է: Այս առթիւ ժողով գումարելով, դրդիչ կանչեր արձակեցին Ամերիկացիներուն եւ Տոքթ. Մոսատեղի դէմ, «որ կ'ուզէ աշխարհակալներուն ծախել Իրանի քարիւղը»:

ԶՕՐ. ՏԸ ԿՈԼԻ կազմակերպութիւնը ծրագիր մը մշակած է, Եւրոպայի պետութիւնները համադաշնակցութեան մը վերածելու եւ անոնց զինուորական կարգուսարքը միացնելու համար: Այս ծրագիրը երկու բանաձեւերու վերածուելով, պիտի ղրկուի Ազգ. Ժողովին, եւ պիտի բաժնուի ամբողջ Ֆրանսայի եւ բարեկամ երկիրներու մէջ :

## ՅԱՌԱՋ կը նուիրեն

Մարսէյլէն Պ. Ս. Աճէմեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ ժան Աճէմեանի (Մ. Նահանգներ):

## «ՀԱՄԱԶԳԱՅԻՆ» ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը 4 Յունուար, Ուրբաթ երեկոյ, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

Դասախօս՝ Պ. Ս. Թորոսեան, նիւթը՝ Մարքսի վարդապետութիւնը, ազգութիւն եւ հայրենիք (երկրորդ եւ վերջին մաս):

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Շավիլէն Քիւլչէեան, Փափազեան եւ Գալայճեան ընտանիքները եւ բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ նուիրատուութիւններով ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր, մեծ մօր եւ ազգականին՝ ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՔԻՒԼՉԷԵԱՆԻ մահուան առթիւ :

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Ռոնի սու Պուայէն Նիկողոսեան, Էմիրեան, Շմաւոնեան, Անդրանիկեան եւ Կարմիրեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ ու գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր եւ ազգականին Պ. ԱՐՇԱՄ ՆԻԿՈՂՈՍԵԱՆԻ մահուան առթիւ :

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ
Փարիզի եւ շրջանի ուր մասնաճիւղերով կը տօնէ

## Մանուկներու Օրը

Հինգշաբթի, Յունուար 3ին ժամը 3—6, Սօսիէթէ Սավանթի մեծ սրահին մէջ :

Մանկական ֆիլմ, տրամախօսութիւն, երգ, պար: ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՆ կը բաժնէ նուէրներ եւ նախընթրիք : ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

## Ֆ. Կ. Խաչի տարեկան

ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
(ՀԱՅԿԱԿԱՆ ԾՆՈՒՆԴԻ ՕՐԸ)

6 Յունուար, Սէրքըլ Միլիթէրի մէջ, ժամը 4էն կէս գիշեր:

Ճոխ եւ այլազան յայտագիր : Գեղարուեստական բաժնին մէջ հայկական տարազով խմբապար եւ մենապար: Հայկական խմբերգ: Orchestre Rico's Créole Band (1er prix de disque) :

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ֆր. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղի վարչութիւնը յանուն բոլոր ընկերուհիներուն իր ցաւակցութիւնը կը յայտնէ ողբացեալ ԼԵՒՈՆ ՇԱՆԹԻ եւ Ռ. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆԻ մահուան առթիւ:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է 2500 ֆր. Օր. Ա. Խաեանէ իր ողբացեալ մօրը յիշատակին :

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ
ՈՒՐՖԱՅԻ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

Ուրֆայի Հայր. Միութեան կողմէ հոգեհանգիստ կը կատարուի այս կիրակի առաւօտ Փարիզի Հայոց եկեղեցին (15 rue Jean Goujon), Ուրֆայի նահատակներուն յիշատակին:

Կը հրաւիրուին հայ հայրենակիցները :

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Ալպեր Աշճեան կը ծանուցանեն թէ այսօր, կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցին, ի յիշատակ իրենց ծնողքին Պ. ՊՕՂՈՍ ԱՇՃԵԱՆԻ եւ տիկին ԻՄԱՍՏՈՒՆ ԱՇՃԵԱՆԻ (ծնեալ Զպուքճեան): Կը հրաւիրուին իրենց յիշատակը յարգողները :

ԾՆՈՒՆԴԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

ԱՐՄԵՆԻԱ երգչախումբը կը մասնակցի իր ամբողջ կազմով Մարսէյլ Փրատօ Մայր եկեղեցւոյ երգեցողութեանց Ծնունդեան տօներուն առթիւ:

Պիտի երգուին Կոմիտաս Վ.ի բազմաձայն պատարագը երկսեռ վերածումով, ինչպէս նաեւ Կոմիտասի եւ Սարգսեանի դաշնաւորած Ծննդեան շարականները :

ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ.— Լիոնէն Տիկին Սաբայտարեան հազար ֆր. կը նուիրէ Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացին, փոխան ծաղկեպսակի, Պ. Նշան Համբարձումեանի մահուան առթիւ:

ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ՍԷՆԹ ԱՆԻ ԴՊՐՈՑԻ

Սէնթ Անի դպրոցը վերաբացուած է եւ կանոնաւոր դասաւանդութիւնները կը սկսին Յունուար 2ին, չորեքշաբթի երեկոյեան ժամը 8.30ին:

Կը դասախօսէ Պ. ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ




**Le Gérant : A. NERCESSIAN**
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Քաղաքի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին ժողովը 9 Յունուար, չորեքշաբթի կէսօրէ վերջ ժամը 3ին «Ահարոնեան» ակումբին մէջ: Կը խնդրուի բոլոր անդամուհիներէն ներկայ ըլլալ : Կարեւոր օրակարգ :

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ.— Վ. Խ. Ռընամ.— Կրնաք ղրկել ձեռագիրը :